



# ՆՈՐ ՏԱՐԻՆ ԵՒ ՍՈՒՐԲ ԾՆՈՒՆԴԸ

## ԻՐԵՆՑ ԲԱՐԵԿԱՄՆԵՐՈՒՆ, ՅԱՃԱԽՈՐԴՆԵՐՈՒՆ ԵՒ ԱՇԽԱՏԱՒՈՐՆԵՐՈՒՆ

# ԿԸ ՇՆՈՐՀԱՒՈՐԵՆ

| | | | | |
|---|---|---|---|---|
| ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ<br>ԳԱՀԻՐԷ<br>Հեռ. 934908 | VULCAN<br>ՀՐԱՉ ԳԱԼԸՆԵԱՆ<br>35, Ապու Տարտաա փողոց<br>Աղեքսանդրիա Հեռ. 27931 | ՍԱՍԻՈ-ԹՈՐԳՈՄ | ELPAR SHOES<br>ՎՐԷԺ Լ. ՍԷՖԵՐԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 24073 | STUDIO GARO<br>ԿԱՐՕ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>40, Քասր էլ Նիլ փողոց<br>Գահիրէ Հեռ. 47240 |
| ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ԱՐՄԵՆԱԿ ՍԱՀԱԿԵԱՆ<br>Աղեքսանդրիա | ՀԱՅԿ ՕՀԱՆՆԷՍԵԱՆ<br>*ՈՍԿԵՐԻՉ*<br>Գահիրէ Հեռ. 39825 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՄՈՒՇԵՂ ՏԷՅԻՐՄԷՆՃԵԱՆ<br>ԸՆՏԱՆԻՔ<br>Աղեքսանդրիա Հեռ. 22239 | ՕՆՆԻԿ Կ. ԱԼԵՔՍԱՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 900186-26535 | ԱՐԹՕ ՐԷԻՋԵԱՆ<br>*ԳՈՀԱՐԱՎԱՃԱՌ*<br>Աղեքսանդրիա Հեռ. 29145-21439 |
| LES MAGASINS GENERAUX<br>DE MUSIQUE<br>ԲԱԲԱՁԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>Գահիրէ-9, Ասլի փողոց Հեռ.914407<br>Աղեքս.11, Հոր էյա փողոց Հեռ.21780 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀԱՅԿ ԿԱՐԻՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա | ՄԱՐՏԻԿ ԹԱԹԻԿԵԱՆ<br>*ԱՌԵՒՏՐԱԿԱՆ*<br>3, Սերակ էլ Տին փողոց<br>Գահիրէ Հեռ. 901883 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՄԿՐՏԻՉ ՓԵՄՊԵՃԵԱՆ<br>Աղեքսանդրիա | ԵԴՈՒԱՐԴ ՋՕՐԱՅԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 906479 |
| ԿԱՐԱՊԵՏ ԹԵՐՋԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27873 | MAISON ROYALE<br>ԽՈՍՐՈՎ ՁԱՔԱՐԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 910402 | ՎԱՀԱՆ ԱԲՐԱՀԱՄԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 23145 | LA PRINCESSE<br>ԵՐՈՒԱՆԴ ԹԱՇՃԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>1, Էմատ էլ Տին փողոց<br>Գահիրէ Հեռ. 917231 | ԹՈՎՄԱՍ ՄԱՆՃԸԼԸՔԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27873 |
| BIJOUTERIE DIRAN<br>ՏԻՐԱՆ ԿԻՒՐԵՂԵԱՆ ԵՒ ԸՆԿ.<br>2, Պաղտատ փողոց<br>Հելիոպոլիս Հեռ. 62309 | ՅԱԿՈԲ ԱՆՍՈՒՐԵԱՆ<br>*ԴԵՂԱԳՈՐԾ*<br>Աղեքսանդրիա Հեռ. 72986 | LILI<br>ՅԱԿՈԲ Մ. ԺԱՄԿՈՉԵԱՆ<br>*ՓՈՔՐԻԿՆԵՐՈՒ*<br>*ԿՕՇԻԿԻ ՎԱՃԱՌԱՏՈՒՆ*<br>22, Քասր էլ Նիլ փողոց – Գահիրէ | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՅՈՎՀԱՆՆԷՍ ՈՒՋՈՒՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 73406 | BICHETTE<br>ԳՈՒԹՆՈՒԵԱՆ ԵՒ ԳԱՍԱՊԵԱՆ<br>*ՀԱՍՏԱՏՈՒԹԻՒՆ*<br>Հելիոպոլիս Հեռ. 871235 |
| ՄԿՐՏԻՉ ԽԱՆՃԵԱՆ<br>*ՈՍԿԵՐԻՉ*<br>Աղեքսանդրիա | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՆՈՒՊԱՐ ՍԻՄՈՆԵԱՆ<br>Գահիրէ Հեռ. 40281 | ՅՈՎՍԷՓ ԿԻՒՄԻՒՇԵԱՆ<br>*ՈՍԿԵՐԻՉ*<br>Աղեքսանդրիա Հեռ. 27139 | ՎԱՀԱԳՆ ՏԵՓՈՅԵԱՆ<br>*ԵԼԵԿՏՐԱԳԷՏ*<br>93, Ռամսէս փողոց<br>Գահիրէ Հեռ. 79381 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՀՐԱՅՐ ՄԵՍՐՈՊ ՔԻՒՖԷԼԵԱՆ<br>ԵՒ ԸՆՏԱՆԻՔ<br>Աղեքսանդրիա Հեռ. 26335 |
| STUDIO ANTRO<br>ԱՆԴՐԱՆԻԿ ՎԱՐԺԱՊԵՏԵԱՆ<br>37, Թալաաթ Հարպ փողոց<br>Գահիրէ Հեռ. 75542 | ՄՈՒՐԱՏ ՔԻՐԷՃԵԱՆ<br>*ՇԱՊԿԱԳՈՐԾ*<br>10, Բելիւզ փողոց, Իպրահիմիէ<br>Աղեքսանդրիա | ՄԱԿԱՐ ԳՈՒՄՐՈՒԵԱՆ<br>Արտ Շերիֆ<br>Գահիրէ Հեռ. 919621 | ՌՈՊԷՐ ՉԻԼԻՆԿԻՐԵԱՆ<br>*ՈՍԿԵՐԻՉ*<br>Աղեքսանդրիա Հեռ. 24701 | ՍԵԴԻ ԳՕՉՈՒՆԵԱՆ<br>Կը շնորհաւորէ իր բարեկամները, բեմընկերները, թատերասէր հասարակութիւնը, մաղթելով իրենց երջանիկ տարիներ: |
| ՍԱՐԳԻՍ ՀԱՄԲԱՐՁՈՒՄԵԱՆ<br>*ԴԵՐՁԱԿ*<br>Աղեքսանդրիա Հեռ. 34572 | ԱԼ ՇԱՐՔ ԿՕՇԻԿԻ ԳՈՐԾԱՏՈՒՆ<br>18, Ապտել Ազիզ փողոց<br>Գահիրէ Հեռ. 916531 | ՏԷՐ ԵՒ ՏԻԿԻՆ<br>ՌԱՖՖԻ ԳԱԼԸՆԵԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 27931 | ՏԻԿԻՆ ԱՐԱՔՍԻ ՕՀԱՆԵԱՆ<br>Գահիրէ | ՆՇԱՆ ՊԷՆՏԷԱՆ<br>Աղեքսանդրիա Հեռ. 21942 |



# ՀԱՅՐԵՆԻ ԱՐՏԱԴՐԱՆՔՆԵՐՈՒ ՑՈՒՑԱԴՐՈՒԹԻՒՆ

## Գահիրէի Հայկական Ընթերցասրահին Մէջ





Նախանցեալ Ուրբաթ օր՝ 3 Փետրուարին, Հայկական Ընթերցասրահին մէջ, հայրենակարօտ հոծ թիւով ազգայիններ, Ընկ. Սարգիս Գալաճեանի հայրենի խանդավառիչ տպաւորութիւններուն հաղորդակից ըլլալէ առաջ, հաճելի պատեհութիւնը և վայելքը ունեցան դիտելու և անձամբ դատելու մեր հայրենի երկրի արտադրանքները, որոնք ճաշակով ցուցադրուած էին Սրահին մեծ դահլիճին յարակից սենեակին մէջ։

Բնական է, որ Հայաստանի աշխարհահռչակ արեւահամ գինիները, գոնիակները և շամփանիաները կը գրաւէին պատուոյ տեղերը, ինչպէս նաև սատնին տնտեսութեան վերաբերեալ բազմաթիւ ուտեստեղէններու և թարմ պտուղներու պահածոները, որոնք պատրաստուած էին հայաստանցի փափկաճաշակ տանտիկիններու կողմէ։

Ցուցահանդէսին մէջ իրենց ուրոյն տեղը ունէին Հայաստանի բազմապիսի գլանիկները՝ չքեղ տուփերու մէջ տեղաւորուած։

բազմաթիւ գեղարուեստական լուսանկարներ և Հայպետհրատի լոյս ընծայած գիրքերու ճոխ հաւաքածոյ մը կուգային ամբողջացնել այս հետաքրքրական ցուցահանդէսը։

Խոստովանինք, որ այս ցուցահանդէսը արդար հպարտանքի մը առիթ տուաւ և այցելողները բաժնուեցան իրենց գոհունակութիւնը և շնորհակալիքը յայտնելէ ետք կազմակերպիչներուն և Ընկ. Սարգիս Գալաճեանին ու իր տիկնոջը։





Այս ցուցադրութիւնը, որքան որ մանրանկարային, և կազմուած հայաստանցի աշխատաւորին արգասիքը եղող իրերով, անգամ մը ևս եկաւ ապացուցանել մեր հայրենիքին մէջ տեղի ունեցած բազմապիսի նուաճումներուն իրաւացիութիւնը։

Ցուցադրուած իրերուն մէջ առաջին հերթին աչքի կը զարնէին Հայաստանի թեթև արդիւնաբերութեան արտադրանքներէն՝ նուրբ բրդեայ գործուածքները, կանանց ճաշակաւոր ներքնազգեստները,



արհեստական թելերով գործուած բազմապիսի այր և կնոջ գուլպաները, մետաքսեայ նրբահիւս մանուածքները, հեռուստատեսի և ռատիօ ընդունիչներու ծածկոցները՝ Սայաթ-Նովայի և Սասունցի Դաւիթի դիմանկարներով ևայլն։

Հաճելի տպաւորութիւն մը թողուցին արծաթեայ սրուակները և սեղանի ամանները ինչպէս նաև «Նայիրի» զարթուցիչը։

Հայրենի արդիւնաբերութիւնը, տնտեսութիւնը, մշակութային ի առօրեայ կեանքը ներկայացող

Որպէս յուշանուէր ներկայացուած հայկական նրբակերտ ժողովրդական գործիքներու երբեակը արուեստի բարձրօրակ նմոյշ մըն էր։

Կիրառական արուեստի գեղեցիկ նմոյշներ էին նաև Անույշի, Սարոյի և եղնիկներու արձանիկները։

Կանանց պերճանքի զարդարանքները ցոյց կուտային Հայաստանի հայուհիին նրբաճաշակութիւնը։

Փափաքելի է, որ այս ցուցահանդէսը կրկնուի Աղեքսանդրիոյ մէջ ևս։

ԱՅՑԵԼՈՒ ՄԸ

# ՁՕՆ

## ՆՈՐԸՆՏԻՐ ԵՐԵՍՓՈԽԱՆՆԵՐՈՒՆ

Գրեց ՀՐԱՉ ԳԱԼԸՆԵԱՆ

Սիրելի և Յարգելի Նորընտիր Երեսփոխաններ,

Բնաւ մի սրտնեղիք այս գրութեանս համար։

Թէև ես ալ Ձեզի նման երեսփոխան չեմ ընտրուած, սակայն նոյն օրը երբ «Ջահակիր»ի թղթակից-ներկայացուցիչ 12 ժամ շարունակ նստայ քուէատուփին մօտերը և հետեւեցայ բոլոր անցուդարձներուն.. ուստի ես ինծի կը թոյլատրեմ տալու հետեւեալ «տասը պատուիրանները»։

Այդ թելադրութիւններուն համար ներողամիտ եղէք.. ես ալ Ձեզի համար քիչ մը յոգնած եմ։

Արդ՝ երբ ժողովի կ'երթաս

1.— Բնաւ մի' մոռնար որ քեզի համար չէ որ կ'երթաս. այլ քեզ ընտրողներուն կողմէ ազգային գործերուն բարւօք կարգադրման համար։

2.— Անձդ բնաւ գերադաս մի՝ համարեր միւս ժողովականներէն.. ոչ ալ ստորադասէ անձդ.. բոլորդ հաւասար էք իրարու...։

3.— Շատ լսէ՝ քիչ խօսէ. մանաւանդ խորհելով խօսէ... և միշտ նկատի ունեցիր՝ որ քիչ խօսողը աւելի տպաւորութիւն կը գործէ քան թէ շատ խօսողը...։

4.— Ժողովականի մը դրամը և դիրքը բնաւ նկատի մի' ունենար, այլ կշռէ անոր խելքը և արտայայտած գաղափարները...։ Այս է քսաներորդ դարու դեմոկրատ վարդապետութեան վերջին դասը...։

5.— Քեզ ընտրող ժողովուրդին առջեւ մի' ըլլար անբարտաւան և գոռոզ... այլ եղի'ր սիրալիր, բարեացակամ և մարդկային...։

6.— Բնաւ մի' յախուռնար որ երեսփոխան ես, այլ քեզ ընտրողներուն ներկայացուցիչն ես ու աշխատէ որ սիրուիս ու յարգուիս... ու վայելես ժողովուրդին վստահութիւնը քու մատուցած ծառայութիւններովդ ու դրական գործերովդ։

7.— Բարեւդ մի' գլանար ամենայետին և ամենահամեստ հայուն և ժպտէ'...։ Մի՝ սպասեր որ նախ անոնք քեզ բարեւեն՝ որպէս գերադաս անձ. գերդասութիւնը կը բխի համեստութենէն և հոգիի ազնուութենէն..։

8.— Ժողովներուն միշտ ներկայ եղիր, նկատելով զայն քու գործէդ գերադաս և նուիրական. քու գործդ քուկդ է, իսկ այս՝ հանրութեանը...։

9.— Ակադեմ կան ճառեր մի' խօսիր, այլ կարճ, կտրուկ և գործնական միտքեր յայտնէ...։

10.— Քեզ ընտրող ժողովուրդը մարդու տեղ դի'ր... հաշիւ տալով անոր, բերանացի, գրաւոր, թերթով, կատարած գործերուդ մասին կամ նոյնիսկ ձախորդութեանցդ մասին։ Ամէն ինչ հանրութեան կը պատկանի... և ոչ քե'զի, ու դուն մենատէր և ինքնագլուխ ըլլալու իրաւունք չունիս..։

Ապա թէ ոչ օր մը ժողովուրդը օծիքէդ բռնելով հաշիւ պահանջելու իրաւունք կ'ունենայ։

Այսպէս են ժողովրդավար սկզբունքները, ահա այս է Քամալ Ապտէլ Նասէրի ստեղծած դեմոկրասին։

ՃԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
16 ՓԵՏՐ. 1967




## ԱՄՆ ԿԸ ՅԱՂԹԷ ՀՈՒՆԳԱՐԱԿԱՆ ՖՐԱՆՍՖԱՐՈՍ ԽՈՒՄԲԻՆ՝ 2ՈՎ 1

Մրցումը սկսելուն պէս երկու խումբերն ալ կը ջանային որեւէ ձեւով նշանակել Ա. կէտը։ Հունգարացիները շատ աւելի արագ և ճշգրիտ խաղարկութիւն մը ցուցաբերեցին. իսկ գալով ԱՄՆի գտեալին՝ զօրաւոր և խոհեմ խաղարկութիւն մը ունեցաւ շնորհիւ Ֆանակլիլի փորձառութեան և յառաջապահներու արագութեան։ Ա. կիսախաղը վերջացաւ 0ով 0։

Բ. կիսախաղին հունգարացիները սկիզբի 10 վայրկեանին կըրկնապատկեցին իրենց յարձակողականները ու 12րդ վայրկեանին յառաջապահ Ռագուչի և Ալպերդ իրարու տուած քանի մը փասերով յաջողեցան անցնիլ ԱՄՆի յետսապահներէն և բերդապահ Մարաուան դուրս գալով բերդէն փաուլ մը ըրաւ, որուն համար իրաւարարը բենալդի մը սուլեց, Պանչինը յաջողեցաւ նշանակել Ա. և միակ կէտը Ֆրանսֆարոսի, ճիշդ մէկ վայրկեան ետք հունգարացիներու բերդին առջեւի լիրաբանցումէն օգտուելով Մուսթաֆա Ռիատ նշանակեց հաւասարութեան կէտը։ Այս կէտէն ետք՝ երկու խումբերն ալ զօրացուցին իրենց յարձակումները։ Ռիֆաաթ էլ Ֆանակլիլի և Թահայի տուած երկար փասերով Էգզ էլ Տին յաջողեցաւ նշանակել ԱՄՆի Բ. և յաղթութեան կէտը՝ մրցումը վերջանալէն քանի մը երկվայրկեան առաջ։ Խաղը վերջացաւ 2ով 1՝ ի նպաստ ԱՄՆի։

## ՖՈՒԹՊՈԼԻ ԼԻԿԻ ՄՐՑՈՒՄՆԵՐՈՒՆ 16ՐԴ ՇԱԲԱԹԸ

## ՄԱՍՐԻ ԿԸ ՅԱՂԹԷ ՍՈՒԷԶ ԷԼ ՌԻԱՏԻԻ՝ 2ՈՎ 0

Երկու խումբերն ալ միջակ խաղարկութիւն մը ունեցան փոխն ի փոխ տիրապետելով դաշտին։ 35րդ վայրկեանին Մասրիի մարզիկ Նակիմ կը նշանակէ Ա. կէտը։ Ա. կիսախաղը վերջացաւ 1ով 0՝ ի նպաստ Մասրիի։

Բ. կիսախաղին Մասրին բոլորովին տիրապետեց ու 25րդ վայրկեանին Շահին նշանակեց Մասրիի Բ. կէտը ու մրցումը վերջացաւ 2ով 0՝ ի նպաստ Մասրիի։

## ԻԹԹԻՀԱՏ ՍԱՔՔԱՆՏԱՐԻ ԿԸ ՅԱՂԹԷ ՍԵՔՔԱ ՀԱՏԻՏԻ՝ 2ՈՎ 0

Երկու խումբերն ալ զօրաւոր խաղարկութիւն մը ունեցան ու ամէն ջանք թափեցին յաղթելու։

Սեքքայի մարզիկները իրենց զօրաւոր խաղարկութեան հետ կոշտութիւն ալ ի գործ դրին, որ պատճառներէն մին եղաւ իրենց պարտութեան։

Երկու կէտերն ալ նշանակուեցան Ա. կիսախաղին, մէկը 28րդ վայրկեանին Ահմէտ Եագուպի կողմէ, իսկ միւսը՝ 33րդ վայրկեանին Սամիր Մուխէյմարի կողմէ։

Բ. կիսախաղին երկու խումբերն ալ տիրապետեցին դաշտին փոխն ի փոխ և մրցումը վերջացաւ 2ով 0՝ ի նպաստ Իթթիհատ Սաքանտարիի։

Այս մրցումին Սեքքայի յառաջապահները ոչ մէկ վտանգ կը ներկայացնէին։

## ՃԱՄԱԼԷՔ ԿԸ ՊԱՐՏՈՒԻ ՕԼԻՄՓԻՔԷՆ՝ 2-0

Երկու խումբերն ալ արագ, զօրաւոր և գեղեցիկ խաղարկութիւն մը ցուցաբերեցին, սակայն մէկէ աւելի առիթներ փախցուցին։ Օլիմփիքի խումբը օգտագործեց Էգզ էլ Տինի արագութիւնը և 7րդ վայրկեանին Մահմուտ Պատաուիի մէկ երկար փասով գլխու զօրաւոր հարուածով մը նշանակեց Ա. կէտը։ Բ. կիսախաղի 34րդ վայրկեանին Ազգիի երկար փասով Էգզ էլ Տին իր կարգին դիւրութեամբ անցաւ յետսապահներէն ինչպէս նաև բերդապահէն և նշանակեց Օլիմփիքի Բ. կէտը շատ դիւրութեամբ։

## ԱՀԼԻ ՊԱՐՏՈՒԹԵԱՆ ԿԸ ՄԱՏՆԷ ՄԵՀԱԼԼԱՅԻ ԽՈՒՄԲԸ՝ 1ՈՎ 0

Ահլիի և Մեհալլայի մարզիկները 20 հազար հոգիի առջեւ շատ լաւ, զօրաւոր ու գեղեցիկ խաղարկութիւն մը ցուցաբերեցին Մեհալլայի սթատին մէջ։

Մեհալլայի խաղացողները իրենց ամենալաւ վիճակին մէջ էին ու քաջաբար դիմադրեցին Ահլիին, որ իր լաւագոյն խաղարկութիւնը տուաւ այս շրջանին։

Ահլիի մարզիկները անճանաչելի էին դաշտին վրայ ու այս մրցումը կը խաղային յաղթելու համար։

Բ. կիսախաղի 40րդ վայրկանին գնդակը անցաւ Իպրահիմ Հիւսէյնէն Ուսամային, անկէ ալ Հասան Կապրին և Թահային և վերջապէս հասաւ Ահլիի խմբապետ Ռիֆաաթ էլ Ֆանակլիլին, որ ուժգնօրէն հարո ածելով դէպի Մեհալլայի բերդը նշանկեց Ահլիի միակ և յաղթութեան կէտը, որուն դէմ բերդապահ Խորշիտ բան մը չէր կրնար ընել։

Նախապէս Խորշիտ շատ մը վտանգաւոր հարուածներ ստացած էր ու քաջաբար պաշտպանած իր բերդը։

## ԹԱԵԱՐԱՆ ԿԸ ՅԱՂԹԷ ՏԱՄԻԵԹԻ՝ 2ՈՎ 0

Այս մրցումը շատ մեծ կարեւորութիւն ունէր երկու խումբերուն համար՝ որովհետեւ Թաեարան ունէր 8 կէտ, իսկ Տամիեթ 10 կէտ։ Երկու խումբերն ալ իրենց կարելին պիտի ընէին յաղթական դուրս գալու այս մրցումէն։

Թաեարանի խաղարկութիւնը շատ աւելի լաւ և ճշգրիտ էր քան Տամիեթինը։ Երկու խումբերն ալ արագօրէն կը փոխանցէին գնդակը իրենց ընկերներուն։

Թաեարանի յառաջապահ Մուսթաֆա Տարուիշ նշանակեց երկու կէտերը. մէկը Ա. կիսախաղի 20րդ վայրկեանին, իսկ միւսը՝ Բ. կիսախաղի 31րդ վայրկեանին, ու այսպէսով Թաեարան յաղթական դուրս եկաւ և ունեցաւ 10 կէտ, հաւասարելով Տամիեթի և Սեքքա Հատիտի։

## ԻՍՄԱՒԻԼԻ ԿԸ ՅԱՂԹԷ ԹԵՐՍԱՆԱՅԻ 3ՈՎ 2

Թերսանա սկսաւ մրցումը շատ զօրաւոր յարձակողականով մը ու քանիցս սպառնաց Իսմաիլիի բերդին, որու բերդապահը և պաշտպանողական գիծը բաւական լուրջ վայրկեաններ անցուցին ու 11րդ վայրկեանին քանի մը գեղեցիկ փոխանցումներէ ետք՝ Հարպ նշանակեց Թերսանայի Ա. կէտը։ Ասիկա աւելի քաջալերեց Թերսանայի մարզիկները, մինչ Իսմաիլիացիները կազմակերպ[illegible] ու անցան յարձակողական[illegible] [illegible]Օրդ վայրկեանին Սայէտ [illegible] նշանակեց հաւասարութեան կէտը։ Թերսանա կը նշանակէ իր Բ. կէտը 33րդ վայրկեանին, որուն հերոսն էր Մահմուտ Հասան։ Բ. կիսախաղին Իսմաիլիացիները անմիջապէս կ'անցնին յարձակողականի ու 14րդ վայրկեանին Ռիօ կը նշանակէ հաւասարութեան կէտը, իսկ 23րդ վայրկեանին Արապի կը նշանակէ Գ. և յաղթութեան կէտը։

Շատ գեղեցիկ մրցում մըն էր և երկու խումբերն ալ արագ խաղարկութիւն մը ունեցան՝ մանաւանդ սկիզբի 15 վայրկեանին և Բ. կիսախաղի առաջին 30 վայրկեաններուն։

ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ

## «ՃԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Տիկին Արմինէ Տէյիրմէնճեան (Գահիրէ) մէկ տարուան «Ճահակիր» կը նուիրէ Օր. Վերոն Քրիստեանի (Մոնրէալ)։

Պր. Յարութիւն Պօյաճեան (Պր. Վաղինակ Լուսինեանի ձեռամբ, Խարթում) մէկ տարուան «Ճահակիր» կը նուիրէ Տիկին Ա. Սեմերճեանի (Երեւան)։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Խորհրդային Հայաստանի Լենինական քաղաքէն Անժիկ Յովհաննէսի Դարբինեանը (ծնեալ Գարախանեան), կը փնտռէ իր հօրեղբայրը՝ Երուանդ Գրիգորի Գարախանեանը, որ հայրենական պատերազմի տարիներուն մաս կազմած է Հայկական Թամանեան զօրաբաժնին և եղած է Քերչի ճակատը 1942 թուին։ Իրմէ վերջին անգամ նամակ ստացուած է Թուապսէէն։

Երուանդ Գարախանեան ծնած է 1902 թուին Կարսի շըրջանի Թիկնիս գիւղը, ուրկէ 1918ին անցած է Լենինական և հաստատուած Ախուրեանի շրջանի Ախուրիկ գիւղը։ Հօր անունն է Գրիգոր, մօրը՝ Բեբրոն, եղբայրը՝ Յովհաննէս, կինը՝ Շուշիկ, զաւակները Մարկուշ, Լիտա, Ռազմիկ, Ռիմա, Ցենիա, Ռաֆֆիկ։

Իր մասին տեղեկութիւն ունեցողներէն կը խնդրուի հաղորդել Անժիկ Դարբինեանի, Լենինական, Ալավերտեան փողոց՝ տուն 54, Սովետական Հայաստան։

(Արտասահմանեան թերթերէն կը խնդրուի արտատպել)։



«Ճահակիր»ի Աղեքսանդրիոյ ներկայացուցիչն է Պր. ՎԱՀԱՆ ՊԸՆՏԵԱՆ, Հելիոպոլիս փող. թիւ 18 Ռամլէ, Քան Տը Սեզար Հեռ. թիւ 21942։

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
2 ՄԱՐՏ 1967

# ՎԱԽԹԱՆԳ ԱՆԱՆԵԱՆԻ ՀԵՏ

( Շարունակութիւն Դ. էջէն )

— Գնա՛, խփի՛ր այդ կաքաւին ու բե՛ր։

Վարորդը զէնքը առած անհետացաւ։

— Հրաչ սիրելի՛ս, ուզում եմ իմ զէնքերից մին քեզ նուէր տալ, կարող ես հետդ տանել, խնդրեմ հրամմէ՛...։ Ու ինծի երկարեց



Մանկասարեան՝ ...ցի նկարիչ եւ եղինակը պախ... րին՝ որ նո... իրեցին ...անի հետ յօդուա-

Թիչ ետք հրացանի պայթուն մը... ու տեսանք որ վարորդը մեր կողմը կուգայ բաւական մեծ կենդանի մը բռնած։ Ան յաղթականօրէն ըսաւ.

— Ես գագաթից վար իջած կաքաւին էի հետապնդում, երբ ժայռին տակից այս նապաստակը դուրս ցատկեց, ու ես ալ խփեցի։

Հինգ քիլոնոց հէանալի նապաստակ մըն էր։

Հետզհետէ որսորդները սկսան լեռներէն իջնել։ Բոլորն ալ կաքաւ որսացացած էին։ Ամենամեծը ընկ. Վախթանգի կրտսեր տղուն Լեւոնիկի զարկածն էր։ Հայրը շատ ուրախացաւ ու ըսաւ.

...ուշալի ...էնք մը երեք խողովակներով, մէկը արջի, միւս երկուքն ալ թռչունի կամ փոքր կենդանիներու համար։

Կը ցաւիմ որ այդ հրաշալի նուէրը պիտի մերժեմ, ըսի, որովհետեւ եթէ այս զէնքը առած մտնեմ «Ինթուրիստ»... բոլորը կասկածոտ ակնարկներ պիտի ուղղեն ինծի. վերադարձի նաւուն վրայ եւս նոյնը պիտի պատահի, և այդ զէնքին պատճառաւ ես շատ հեշտ աչքով պիտի չդիտուիմ ամենուրեք։

«Հասկանում եմ, հասկանում եմ» պատասխանեց և դառնալով վե...իչած անձիս՝ ըսաւ.



Պախրաներ Զանգեզուրի լեռներում

— Ե՛կ Լեւոնիկ ջան քեզ համբուրեմ, սա քո առաջին կաքաւն է... պէտք է շնորհաւորել։

Որսորդական մեր խումբը իր գործը վերջացուցած ըլլալով՝ վերադարձանք Գառնի, ուր որսորդներէն մէկուն տունը ճաշեցինք։ Գառնեցիները իրենց գիւղին անունը կը հնչեն Կիյառնի՝ փոխանակ Գառնիի։ Երեկոյեան կիյառնէին վերադարձանք Երեւան գոհ և ուրախ։

Երբ ընկ. Վախթանգի բնակարանը հասանք, հոն մեզի կը սպասէր չոր ու ջղուտ կազմուածքով, դիւրաշարժ ու աշխոյժ համակրելի անձ մը։ Նախ քան զայն ինծի ներկայացնելու, ընկ. Վախթանգ ըսաւ.

—Քեզ ներկայացնումեմ լաւագոյն բարեկամս մէջ՝ զանգեզուրցի մեծ որսորդ և առաջնակարգ նկարիչ ՍԱՐԳՈ ՄԱՆԿԱՍԱՐԵԱՆԸ։

Մեծ հաճոյքով ձեռնուեցայ այդ շատ համակրելի զանգեզուրցիին հետ, որ իր կեանքը անցուցած էր Ղափարանի լեռներուն մէջ որսորդութիւն ընելով և գծելով։ Իսկապէս որ ընկ. Վախթանգի սենեակի պատէն կախուած էր հրաշալի բնակարան մը, որ կը ներկայացնէր նաև Զանգեզուրի ձիւնապատ լեռներուն վրայ անդունդին վրայէն ցատկելու դիրքով հսկայ քարայծ մը։

-- Սա իր գործն է, ըսաւ ընկ. Վախթանգ. ...՛ կ'որսայ, թէ՛ կ'սպրի և թէ՛ կը գծէ, ի...ական

մի արուեստագէտ՝ լեռնական ու վեհ, համեստ ու քաղցր։

Ապա, ընկ. Ս. Մանկասարեան և Վ. Անանեան ինծի նուիրեցին նկարիչի գործերէն Զանգեզուրի տեսարան մը։ Եւ այսպէս մակագրեցին.

«Որսորդներ Վ. Անանեանից Ս. Մանկասարեանից՝ որսորդ Հրաչ Կալինեանին՝

«Երեւան»

Շատ գգացուած այս անակընկալ նուէր...ն՝ համբուրեցի զիրենք։

Ընկ. Ս. Մանկասարեան մեզ հրաւիրեց Ղափարան որսորդութեան համար։ Սակայն տրուած ըլլալով որ ընկ. Վախթանգն ու ես բաւական յառաջացած տարիք ունինք, ան սիրով յանձն առաւ Անանեանի տղան Լեւոնիկը և իմ Ֆրիկ կըրտսերս, որ կ'ուսանի Հայաստանի մէջ, որպէս իր աշակերտները ու որսի ընկերները ընդունիլ։

Ահա այս այն անձն է, որուն մասին ընկ. Անանեան իր մէկ նամակին մէջ կը գրէր (Նամակը տպուեցաւ «ՋԱՀԱԿԻՐ»ի մէջ).

«Սագոն դրկեցի լեռներ, լիճերն ու գետերը՝ ոռպեսզի իշխան ձուկի հաւկիթները տարածի, որ իշխանը հասարականայ եւ ամեն մարդ ուտի առատ»։

Կը նկատէք անշուշտ, որ մեր հայրենի գրագէտները, նկարիչներն ու որսորդները չեն գոհանար իրենց զբաղումներով, այլ կ'աշխատին նաև երկրին տնտեսութիւնը զարգացնել...

Այսպէս է մեր հայրենիքը, այսպէս է այդ մեծ եռացող կաթսան...։ ՀՐԱՉ ԳԱԼԸՆԵԱՆ

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ
### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Ողբ. Հրաչ Թապաքեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան, կը նուիրեն՝ ե.դ.

| | |
|---|---|
| Տէր և Տիկ. Հայկ Օհաննէսեան | 100 |
| Տէր և Տիկ. Վահան Չէչճէնեան | 100 |
| Տոքթ. Արեգ Օհաննէսեան | 100 |
| Տէր և Տիկին Նուպար Պալաեան | 100 |

## ՄԱՐԶԱԿԱՆ

( Շար. Ե. էջէն )

Սեքքայի յաղթութեան կէտը նշանակեց Քամալ Էթման Ա. կիսախաղի վերջին վայրկեանին ու մրցումը վերջացաւ 1–0։

### ԹԵՐՍԱՆԱ ԿԸ ՅԱՂԹԷ ՍԱՌՈՒԱԶԵԼԻՆ՝ 2ՈՎ 0

Թերսանա այս մրցումը կը յաղթէ 2ով 0 Մուսթաֆա Ռիատի անձնական ճկուն խաղարկութեամբ։

Սառուահելի խումբը մրցումի ամբողջ տեւողութեան տիրապետած էր և յաջողեցաւ յառաջանալ մինչեւ Թերսանայի բաժինին մէջ, բայց ոչ մէկ վտանգ հասաւ Թերսանայի բերդին։ Միւս կողմէ երկու հակայարձակողականներուն, գնդակը հանելով Մուսթաֆայի, մին Ա. կիսախաղի 30րդ վայրկեանին և միւսը Բ. կիսախաղի 36րդ վայրկեանին, ան յաջողեցաւ նշանակել Թերսանայի 2 կէտերը։

Թերսանայի խումբը մրցումը գրեթէ խաղաց պաշտպանողական կերպով և միայն այս երկու հակայարձակողականներէն օգտուեցաւ ու յաղթանակեց։

ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ

## ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀ
## ԳԱՀԻՐԷ

### ԲԱՆԱԽՕՍԱԿԱՆ ԵՐԵԿՈՅ

ՈՒՐԲԱԹ, 10 ՄԱՐՏ 1967, Կ. Ե. ԺԱՄԸ 9ԻՆ

Կը խօսի ծանօթ գրող

ՊՐ. ԱՐՄԷՆ ՏԱՏՈՒՐ

Նիւթ ունենալով՝

### "ԿԻՊՐՈՍ՝ ԶՔՆԱՂ ԿՂԶԻՆ ԵՒ ՀԱՅ ԳԱՂՈՒԹԸ"

Մոգական լապտերով պիտի ցուցադրուին կիպրական տեսարաններ

Հայ հասարակութիւնը սիրով կը հրաւիրուի

ՎԱՐՉՈՒԹԻՒՆ

—— ⁂ ——

### ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՇԱԲԱԹԱԿԱՆ ՀԱՒԱՔՈՅԹ

Հինգշաբթի, 9 Մարտ 1967, երեկոյեան ժամը 7.30ին

### ԵՐԻՏԱՍԱՐԴԱԿԱՆ ՄԵԾ ՀԱՒԱՔՈՅԹ

Կազմակերպուած Հայկ. Ընթերցասրահի Մարտ ամսուան յանձնախումբին կողմէ եւ մասնակցութեամբ Գահիրէի բոլոր ակումբներու երիտասարդական մարմիններուն։

Հայ երիտասարդութիւնը սիրով կը հրաւիրուի

ԵՐԻՏ. ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ

—— ⁂ ——

ԳՐԱՒՈՒԱԾ ԹՈՒԱԿԱՆ

ԿԻՐԱԿԻ, 19 ՄԱՐՏ 1967, ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 6.30ին

### ԾԱՂԿԱԶԱՐԴԻ ԱՌԹԻՒ

Երիտասարդական Ծաղկատօն

Մանրամասնութիւնները յաջորդով

ԵՐԻՏ. ՅԱՆՁՆԱԽՈՒՄԲ



ԴԻՄԱԿԱՒՈՐ և ԱՆԴԻՄԱԿ ՊԱՐԱՀԱՆԴԷՍ

ՏԵՂԻ Կ'ՈՒՆԵՆԱՅ ՇԱԲԱԹ 11 ՄԱՐՏ 1967
ԵՐԵԿՈՅԵԱՆ ԺԱՄԸ 9ԷՆ ՍԿՍԵԱԼ
ՕՊԵՐԺ ՏԷ ՓԻՐԱՄԻՏԻ ՇՔԵՂ ՍՐԱՀՆԵՐՈՒՆ ՄԷՋ
ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹԵԱՄԲ

### ՀԱՅ ԳԵՂԱՐՈՒԵՍՏԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ

ի Նպաստ իր Մշակութային Ձեռնարկներուն

ՕՐՈՒԱՆ ՅԱՅՏԱԳՐԻՆ ՄԱՍ ԿԸ ԿԱԶՄԵՆ ՕՊԵՐԺ ՏԷ ՓԻՐԱՄԻՏԻ
ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՅԱՅՏԱԳԻՐԸ
ԵՒ ԾՊՏԵԱԼ ՏՈՂԱՆՑՔ ՊԱՏՄՈՒԹԵԱՆ ՄԷՋԷՆ...
ԱԴԱՄ ԵՒ ԵՒԱՅԷՆ ՍԿՍԵԱԼ
ՄՈՒՏՔ ԵՒ ՃԱՇ՝ 265 Ե.Դ.

Վիճակահանութեան տոմսերէն մէկը պիտի շահի Գահիրէ—Աթէնք—Սալոնիկ երթուդարձի տոմս մը՝ նուիրուած OLYMPIC AIRWAYSէն

Տոմսերուն համար դիմել Գահիրէի մէջ Հայ Գեղ. Միութեան սրահը՝ հեռ. 76282, Սեմիրամիս պանդոկը՝ Պր. Օննիկ Ալեքսանեանին՝ հեռ. 26535, Հելիոպոլիս՝ Կոկանեան Սրահ՝ հեռ. 65172, Աղեքսանդրիա՝ «Տիգրան Երկաթ»ի Սրահը՝ հեռ. 26202։

ՋԱՀԱԿԻՐ
ԱԶԳԱՅԻՆ ԳՐԱԿԱՆ ԸՆԿԵՐԱՅԻՆ ՇԱԲԱԹԱԹԵՐԹ
9 ՄԱՐՏ 1967




## Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐ ԵՒ ԹԱԵԱՐԱՆ (ԿՐՏՍԵՐՆԵՐ)
### ՀԱՒԱՍԱՐ ՄՆԱՑԻՆ 1-1

Անցեալ Կիրակի տեղի ունեցաւ Ֆութպոլի մրցում մը ընդմէջ Հ.Մ.Ը.Մ.Նուպարի եւ Թաեարանի, «Սենթ Ֆամիլ»ի դաշտին վրայ։

Հ.Մ.Ը.Մ.-Նուպարի մարզիկները իրենց կարելին ըրին այս մրցումէն յաղթական դուրս գալու, հակառակ անոր որ մրցորդ խումբի մարզիկները տարիքով եւ ֆիզիքականով աւելի մեծ եւ զօրաւոր էին։ Երկու խումբերն ալ բաւական լաւ խաղարկութիւն մը ցուցաբերեցին։



Հ.Մ.Ը.Մ.-ՆՈՒՊԱՐԻ ՖՈՒԹՊՈԼԻ ԽՈՒՄԲԸ

9րդ վայրկեանին Թաեարան նշանակեց Ա. կէտը, իսկ հաւասարութեան կէտը նշանակեց խմբապետ՝ Աւետիս Տէմիրճեանը, 32րդ վայրկեանին եւ արժանացաւ ներկաներուն գնահատանքին։

Հայ մարզիկները այս կէտէն ետք մէկէ աւելի առիթներ փախցուցին որոնք կրնային արդիւնքը փոխել։ Անոնք իրենց շարունակական յարձակումներով սպառնացին Թաեարանի բերդապահին, որ մեծ ինքնավստահութեամբ կը խաղար ինչպէս մեր բերդապահ Շահէնը, որ իր կարգին յաջողեցաւ պաշտպանել իր բերդը, օգնութեամբ յետսապահ գիծին եւ որոնցմէ լաւագոյններն էին Լեւոն Գավալճեանը (16 տարեկանէն վար) եւ Սարգիս Էմիրզեանը։ Գալով յարձակողականները կազմակերպողներ Աւետիս Տէմիրճեանի (խմբապետ) եւ Մարտիկ Պալաեանի, անոնք լիովին կատարեցին իրենց պարտականութիւնը միշտ երկար փասեր տալով յառաջապահներուն, որոնք յաճախ դժուարութեամբ կը յաջողէին անցնիլ մրցորդ խումբի պաշտպանողական գիծը եւ սակայն գնդակը կ'երթար բերդապահին ձեռքերուն մէջ։

Եթէ մեր յառաջապահները արագօրէն տեղափոխուէին, ինչ որ գրեթէ չի պատահեցաւ, կրնային շուարումի ենթարկել մրցորդ խումբին պաշտպանողական գիծը ու աւելի նպաստաւոր արդիւնքով մը վերջացնել այս մրցումը։

Մեր մարզասէր հասարակութիւնը պարտի քաջալերել մեր այս երիտասարդ Ֆութպոլիստները, ինչպէս նաեւ խումբին պատասխանատու՝ Պր. Ժորժ Մարանկոզեանը ու մարզիչը՝ Մամտուհ Մարզուքը։

### «ԵԳԻՊՏՈՍԻ ԲԱԺԱԿ»Ի ՄՐՑՈՒՄՆԵՐՈՒՆ Բ. ՇԱԲԱԹՈՒԱՆ ԱՐԴԻՒՆՔՆԵՐԸ

| | |
|---|---|
| Օլիմփիք-Սուէզ էլ Ոիասի | 0-0 |
| Մասրի եւ Սաուահել | 1-1 |
| Զամալէք եւ Թանթա | 1-1 |
| Անլի եւ Տամիեթ | 5-0 |
| Մեհալլա եւ Պենհա | 1-1 |
| Իսմայիլի եւ Շուրթա | 4-1 |
| Իթթիհաս-Թաեարան | 4-2 |
| Թերսանա-Սեքքա Հատիտ | 1-0 |

---

## ՍԳՈՒՈՇ ՌԱՔԷԹ

— Աւստրալիոյ կազմակերպած սգուաշի համաշխարհային ախոյեանութեան մրցաշարքը տեղի պիտի ունենայ յառաջիկայ Յուլիսին. ԱՄՀ եւ մաս պիտի կազմէ այս մրցաշարքին, ու ամէն ջանք պիտի թափէ որպէսզի 1968ի մրցաշարքը ինք կազմակերպէ Գահիրէի մէջ։

— Անլի մարզական ակումբը հրաւէր ստացած է Աթէնքի ակումբէն Սգուաշ Ռաքէթի մրցումի համար, որ պիտի տեւէ 19էն 26 Մարտ։ Այս մրցումներուն ընթացքին Յունաստանի թագաւոր Կոստանդին պիտի մրցի Անլիի և միեւնոյն ժամանակ ԱՄՀի ախոյեան Իպրահիմ Ամինի հետ։

Խումբը ճամբայ պիտի ելլէ դէպի Յունաստան Մարտ 22ին առաջնորդութեամբ Տոքթ. Իպրահիմ էլ Ուաքիլի. մարզիկներն են Իպրահիմ Ամին, Կալալ Ալլամ և Ապպաս Գատուս։

ՎԱՀԱՆ ԳԱԶԱՆՃԵԱՆ

---

## «ՋԱՀԱԿԻՐ»Ի ՄՐՑԱՆՔԸ

### ՖՈՒԹՊՈԼԻ ԼԻԿԻ ՄՐՑՈՒՄՆԵՐՈՒՆ ԱՌԹԻՒ

1.— Ո՞ր խումբը պիտի գրաւէ առաջին տեղը.
2.— Ո՞ր խումբը պիտի գրաւէ երկրորդ տեղը.
3.— Ո՞ր խումբը վերջինը պիտի ելլէ։

Վերոյիշեալ հարցումներուն պատասխանել մինչև Մարտի 30։

Ճիշդ պատասխանողներէն հինգ հոգին վիճակով պիտի ստանան պարգեւներ։

Հասցէ. Concours Tchahakir, Sport et Jeunesse
B.P. 2111, LE CAIRE (R.A.U.)

## ՆՈՒԻՐԱՏՈՒՈՒԹԻՒՆՆԵՐ
### (ԵԳԻՊՏԱԿԱՆ ԴԱՀԵԿԱՆՈՎ)

Տիկին Ազնիւ Հիւսիսեան (Հելուան) իր շատ սիրելի փեսին՝ Հրաչ Թապագեանի տխուր մահուան առթիւ, փոխան ծաղկեպսակի կը նուիրէ.

| | Ե.Դ. |
|---|---|
| Աղքատախնամին | 100 |
| Գալուստեանի ճաշի սեղանին | 100 |
| «Այծեմնիկ» Հանգստեան Տան | 100 |
| Հայկական Ընթերցասրահին | 100 |
| «Ջահակիր»ին | 100 |

Նոյն առթիւ՝ Տիկին Վերոնիկ Քիւրմիւզ 100 Ե.Դ. կը նուիրէ Գալուստեանի ճաշի սեղանին։

(Ստանալ «Ջահակիր»ի խմբագրատունէն)

### «ՋԱՀԱԿԻՐ»ԻՆ

Տէր և Տիկին Վահան Գըզըլեան, իրենց սիրելի եղբօր Սարգիս Գըզըլեանի մահուան Գ. տարելիցին և իրենց եղբօր կնոջ ողբ. Զապէլ Գըզըլեանի մահուան Բ. տարելիցին առթիւ և անոնց քաղցր յիշատակին կը նուիրեն 200 Ե.Դ.։

### ՀԱՅԿԱԿԱՆ ԸՆԹԵՐՑԱՍՐԱՀԻՆ

Ողբ. Հրաչ Թապագեանի մահուան տխուր առթիւ, վասն ցաւակցութեան Տէր և Տիկին Զաւէն Պալեան կը նուիրեն 100 Ե.Դ.։

Պր. Գրիգոր Ներսէսեանի ընդ Օր. Պերճուհի Սարգիսեանի (Աղեքս.) նշանախօսութեան ուրախ առթիւ, փոխան ծաղկեփունջի, Տէր և Տիկին Մեսրոպ Ճիկուեան կը նուիրեն 50 Ե.Դ.։

### «ՋԱՀԱԿԻՐ» ԿԸ ՆՈՒԻՐԵՆ

Ընկեր Կիրակոս Տօնիկեան (Պէյրութ), գնահատելով «Ջահակիր»ի ազգային և մշակութային մեծ ծառայութիւնները, բաժանորդագրութիւններ կը նուիրէ իր հարսին և զաւակաց՝

— Տիկին Անահիտ Տօնիկեանի (Պէյրութ).
— Տէր եւ Տիկին Նշան Էրվանեանի (Պաղտատ).
— Տէր եւ Տիկին Նորայր Թորիկեանի (Լոնտոն)։








دار شوشة للطباعة

